Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 2 1949

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


էջ

Ժողովրդական դատարանների նախընտրական ագիտացիան բարձրացնել նոր աստիճանի . . . 1

Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ.— Գյուղական ագիտատորների անելիքները գարնանացանի նախապատրաստման գործում . . . . . . 5

Օգտագործիր գրույցի ժամանակ

Հաղթանակի թվեր . . . . . . . . 19

Արտադրության առաջավորների ամբիոնը

Լ. ՂԱՐԻԲՅԱՆ.— Աշխատում ենք 1950 թվի հաշվին 29

Օգնություն ագիտատորին

ԳՐ. ԹՈՒՄԱՆՅԱՆ.— Ի. Վ. Միչուրինի ուսմունքի էության մասին . . . . . . . . 37

Նոր գրքեր . . . . . . . . . 49



Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և Ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—02—87։


# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԱՏԱՐԱՆՆԵՐԻ ՆԱԽԸՆՏՐԱԿԱՆ ԱԳԻՏԱՑԻԱՆ ԲԱՐՁՐԱՑՆԵԼ ՆՈՐ ԱՍՏԻՃԱՆԻ

Ժողովրդական դատարանների ընտրական կամպանիան մտել է իր կարևոր փուլը՝ ամենուրեք լայն ու հետաքրքիր ագիտացիա է ծավալվում՝ ժողովրդական դատավորների և ժողովրդական ատենակալների թեկնածուների օգտին։ Պարտիական կազմակերպությունները ինքնաքննադատաբար պետք է վերացնեն ագիտացիոն-մասսայական աշխատանքներում եղած բացերն ու թերությունները և օգտագործեն մինչև փետրվարի 6-ը մնացած ժամանակամիջոցը՝ նոր աստիճանի բարձրացնելու գործարաններում, կոլխոզներում, հիմնարկ-ձեռնարկություններում և հատկապես ըստ բնակության վայրի կատարվող ագիտացիայի մակարդակը, բարձրացնեն նրա քաղաքական նպատակասլացությունը։

Պարտիական կազմակերպությունները, ագիտկոլեկտիվներն ու առանձին ագիտատորները ընտրական կամպանիայի ագիտացիոն-մասսայական աշխատանքների ընթացքում

չեն օգտագործում ագիտացիայի բոլոր ձևերն ու մեթոդները։ Հատկապես ագիտացիայի այնպիսի մասսայական ձևը, ինչպիսին է գործարաններում, կոլխոզներում, հիմնարկ-ձեռնարկություններում, ինտելիգենցիայի համար կազմակերպվող ժողովները շատ տեղերում մոռացության են տրված, դրա հետևանքով պարտիական, սովետական ղեկավար աշխատողներն, ինչպես նաև դատական-դատախազական աշխատողները ելույթներ չեն ունենում այդ ժողովներում։

Անհրաժեշտ է, որ պարտիական կազմակերպությունները, ագիտկոլեկտիվների ղեկավարները և առանձին ագիտատորները ինքնաստուգման կարգով պարզեն, թե արդյոք իրենց տայոնում, գործարանում, կոլխոզում, հիմնարկ-ձեռնարկությունում, թաղում, առանձին շենքերում բոլոր ընտրողներն ընդգրկվա՞ծ են ագիտացիայի մեջ, ծանո՞թ են ընտրական Կանոնադրությանը, իրենց իրավունքներին ու պարտականություններին, ընդորում հատուկ ուշադրություն դարձնել ագիտացիայի մեջ ներգրավելու տնային տընտեսուհիներին և արտասահմանից Սովետական Հայաստան վերադարձած հայերին։ Բոլոր ընտրողները գլխովին պետք է ներգրավվեն ագիտացիայի մեջ— սա



է խնդիրը։ Ագիտացիոն- մասսայական աշխատանքի մեջ պարտիական և սովետական ակտիվին ներգրավելու հետ միաժամանակ պետք է ընդլայնել ազգաբնակչության մեջ կարդացվող զեկուցումների և դասախոսությունների թեմատիկան։ Ընտրական Կանոնադրության և ընտրական կամպանիայի բազմապիսի գործնական հարցերի պարզաբանումից բացի, զեկուցումներ և դասախոսություններ կարդալ հետևյալ թեմաների շուրջը. Լենինն ու Ստալինը սոցիալիստական օրինականության մասին, սովետական դատարանի գործունեության կազմակերպման դեմոկրատական հիմունքները, սովետական դատարանի դաստիարակչական դերը, սովետական քաղաքացիների իրավունքներն ու պարտականությունները, ժողովրդական դատարանի պայքարը սոցիալիստական սեփականության պահպանման համար, սովետական դատարանը՝ սովետական քաղաքացիների օրինական իրավունքների պաշտպանության դիրքերում։ Ընտրական կամպանիայի ընթացքում մեր ագիտատորների հիմնական խնդիրներն են աշխատավորական լայն մասսաներին բացատրել ՍՍՌՄ Կոնստիտուցիան, Լենինի և Ստալինի պարտիայի ղեկավարությամբ ձեռք

բերված սոցիալիստական շինարարության նվաճումները, ՍՍՌՄ ժողովրդի՝ Սովետական հայրենասիրության, բարոյական-քաղաքական միասնության, ժողովուրդների բարեկամության նշանակությունը, Սովետական դեմոկրատիայի առավելությունները բուրժուական դեմոկրատիայի նկատմամբ և Սովետական պետությունը ամրապնդելու հետագա խնդիրները։ Մասսաներին պարզաբանել սովետական դատարանի գործունեության դեմոկրատական սկզբունքները, նրա դերը սոցիալիստական սեփականությունը և սովետական քաղաքացիների օրինական շահերն ու իրավունքները պահպանելու գործում, ցույց տալ սովետական դատարանի պատժիչ և դաստիարակող ֆունկցիաները, սովետական դատարանի արմատական տարբերությունը բուրժուական դատարանից։

Ցուցադրական ագիտացիան՝ պլակատները, լոզունգները, մեր երկրի տարբեր բնագավառների աշխատանքներում եղած նվաճումները ցուցադրող դիագրամները— ագիտատորների ձեռքին մեծ ուժ են հանդիսանում՝ փաստերով, թվերով, պատկերներով պարզ, մատչելի, կոնկրետ ու նպատակասլաց ագիտացիան կազմակերպելու համար։ Սակայն ոչ բոլոր ագիտկոլեկտիվներն ու ագի-



տատորներն են ուշադրություն դարձնում այդ բանի վրա։ Օրինակ, Վեդու, Աշտարակի, Դիլիջանի և մի շարք այլ շրջաններում շատ ագիտպունկտեր դեռևս չեն դարձել ագիտացիոն- մասսայական աշխատանքի իսկական կենտրոններ, վատ են կահավորված, նրանք չունեն ցուցադրական նյութեր, անմիջական կապ չունեն ընտրողների հետ։ Ագիտատորը չպետք է այդ բոլորի կողքով անցնի, դրանք նրան են վերաբերում, նա պարտավոր է լուծել այդ հարցերը։ Նշված թերությունների վերացումով ագիտացիոն- մասսայական աշխատանքը կաշխուժանա, այն հետաքրքիր, անմիջական ու նպատակասլաց կդառնա։

Ժողովրդական դատարանների ընտրական կամպանիայի ամբողջ ընթացքի մեջ վճռական նշանակություն ունի դատավորների և ատենակալների համար առաջադրված թեկնածուների հանդիպումների կազմակերպումը ընտրողների հետ։ Պարտիական կազմակերպությունների և ագիտկոլեկտիվների ղեկավարների պարտականությունն է հոգ տանել, որպեսզի բոլոր ագիտատորները մոտիկից իմանան առաջադրված թեկնածուների կենսագրությունները, նրանց հասարակական-քաղաքական և աշխատանքային գոր-

ծանոթությունը և այդ ամենը ժամանակին հասցնեն բոլոր ընտրողներին, նրանց ծանոթացնեն առաջադրված թեկնածուների հետ, կազմակերպեն նրանց ելույթները։

Ագիտացիան կոմունիստների և անկուսակցականների ստալինյան բլոկի թեկնածուների համար մեծ ու շնորհակալ գործ է։ Յուրաքանչյուր ագիտատոր այս գործին պետք է մոտենա մեծ պատասխանատվությամբ, օգտագործի ՍՍՌՄ Գերագույն Սովետի և տեղական Սովետների նախորդ ընտրությունների ժամանակ կուտակված հարուստ փորձը, հնարամիտ ու բազմազան ձևով կապ պահպանի ընտրողների հետ և կազմակերպի նրանց, որպեսզի նրանք փետրվարի 6-ին մեկ մարդու նման քվեարկեն կոմունիստների և անկուսակցականների բլոկի թեկնածուների օգտին։

Ազգաբնակչության լայն խավերին ագիտացիոն-մասսայական աշխատանքի մեջ ներգրավելու նպատակով, ագիտատորներն իրենց աշխատանքների ընթացքում լայնորեն պետք է կազմակերպեն նաև ազգաբնակչության կուլտուրական-գեղարվեստական սպասարկումը՝ գրական-գեղարվեստական երեկոների, դասախոսությունների և զեկուցումների, համերգների կազմակերպում, կինո-



նկարների ցուցադրում և այլն։ Այս աշխատանքների մեջ լայնորեն կարելի է ներգրավել գործարաններում, հիմնարկ-ձեռնարկություններում, կոլխոզներում և ժողովրդական ստեղծագործության գծով գոյություն ունեցող ինքնագործ խմբակներին։

Ագիտատորների խնդիրն է՝ այնպես կազմակերպել իրենց ագիտացիոն-մասսայական, կուլտուրական-քաղաքական աշխատանքը, որպեսզի այդ բոլորը մեծ չափով նպաստի սովետական քաղաքացիների հայրենասիրության կազմակերպմանն ու է՛լ ավելի բարձրացմանը, նրանց մեջ առաջ բերեն աշխատանքային խանդավառություն և նպաստեն հնգամյակի չորրորդ տարվա պլանների կատարմանն ու գերակատարմանը։ Ընտրական կամպանիայի ընթացքում ագիտատորները ագիտացիոն-մասսայական աշխատանքները գյուղում սերտորեն պետք է կապակցեն գարնանացանը լավագույն ձևով նախապատրաստելու գործի հետ, գյուղատնտեսության առաջավորների փորձը մասսայականացնելու հետ, սոցիալիստական մրցության ծավալման հետ։

# ԳՅՈՒՂԱԿԱՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԱՆԵԼԻՔՆԵՐԸ ԳԱՐՆԱՆԱՑԱՆԻ ՆԱԽԱՊԱՏՐԱՍՏՄԱՆ ԳՈՐԾՈՒՄ

Լենինի-Ստալինի պարտիայի կողմից գըլխավորված սոցիալիստական մրցությունը գյուղում պսակվեց մեծագույն հաղթանակներով. 1948 թվի ցանքի տարածությունների աճը, 1947 թվի համեմատությամբ, Սովետական Միության մեջ կազմեց 13,8 միլիոն հեկտար, այդ թվում հացահատիկային կուլտուրաների գծով 10 միլիոն հեկտար։ Չնայած մի շարք մարզերում օդերևութաբանական անբարենպաստ պայմաններին, հացահատիկային կուլտուրաների համախառն բերքը ՍՍՌՄ-ում հասավ նախապատերազմյան 1940 թվի մակարդակին, իսկ մեկ հեկտարի հացահատիկային կուլտուրաների բերքատվությունը անցավ նախապատերազմյան մակարդակից. կոլխոզային գյուղը երկրին տվեց ավելի քան 7 միլիարդ փութ հացահատիկ։

Ձեռք բերած նվաճումները ամրապընդելու, նոր հնգամյակի չորրորդ տարվա



բարձր բերքն ապահովելու նպատակով մեր անծայրածիր երկրի հայրենասեր կոլխոզնիկները գերակատարեցին 1949 թվի բերքի աշնանացանի պետական պլանը։ Անցյալ տարի այս տարվա բերքի համար մոտ 3 միլիոն հեկտար ավելի աշնանացան և 17 միլիոն հեկտար ավելի ցրտահերկ է կատարվել, քան 1947 թվին։

Անցյալ գյուղատնտեսական տարում մեծ նվաճումներ ձեռք բերեց նաև Հայաստանի կոլխոզային գյուղացիությունը։ Կատարելով մեծ Ստալինին տված խոստումը, ռեսպուբլիկայի սոցիալիստական գյուղի աշխատավորները, Հայաստանի բոլշևիկների ղեկավարությամբ, լուրջ հաջողությունների հասան ցանքատարածությունների ընդարձակման, գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման և կոլխոզների կազմակերպական-տնտեսական հետագա ամրապնդման, աշխատանքային կարգապահության և աշխատանքի արտադրողականության բարձրացման գործում։

Սոցիալիստական գյուղատնտեսության նկատմամբ բոլշևիկների պարտիայի, Սովետական պետության և անձամբ ընկեր Ստալինի ամենօրյա հոգատարությունը ապահովեցին կոլխոզային կարգերի այդ նոր և

ըստ էության պատմական հաղթանակները։ ՍՍՌՄ Մինիստրների Սովետի և ՀամԿ(բ)Պ Կենտկոմի որոշումը կոլխոզներում գյուղատնտեսական արտելի օրինակելի Կանոնադրության խախտումների վերացման միջոցառումների մասին, ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումը, կառավարության որոշումը՝ կոլխոզներում աշխատանքի կազմակերպումը բարելավելու, արտադրողականությունը բարձրացնելու և վարձատրությունը կարգավորելու միջոցառումների մասին հսկայական դեր կատարեցին մեր կոլխոզների հետագա զարգացման, աշխատանքի կարգապահության ամրապնդման, աշխատանքի արտադրողականության բարձրացման և այդ հիման վրա սոցիալիստական դաշտերի բերքատվության և անասնապահության մթերատվության բարձրացման գործում։

Մեր պարտիայի ու կառավարության այդ պատմական որոշումների անշեղ կենսագործումով, կոլխոզային գյուղը կհասնի նորանոր նվաճումների կոմունիզմի կառուցման ճանապարհին։ Ուստի մեր գյուղական ագիտատորների առաջնահերթ խնդիրն է՝ նորից ու նորից անդրադառնալ այդ որոշումներին, կոնկրետ փաստերի հիման վրա ցույց տալ այդ որոշումների կենսագործման հետևանքով



ստացած արդյունքները, մոբիլիզացնել գյուղատնտեսության աշխատավորներին կենսագործելու այդ որոշումները՝ ներկա գյուղատնտեսական տարում ավելի բարձր ցուցանիշների հասնելու համար։

Հայաստանի կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի «14-րդ համագումարը գյուղատնտեսության բնագավառում Հայաստանի պարտիական կազմակերպությունների մոտակա տարիների գլխավոր խնդիրը համարում է գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության կրկնապատկումը և անասնաբուծության մթերատվության բարձրացումը»։

Համագումարի այս կարևոր որոշումը կենսագործելու համար մեր գյուղի ագիտատորների դերը կայանում է ոչ միայն նրանում, որ նրանք այդ որոշումը հասցնեն յուրաքանչյուր կոլխոզնիկի, այն դարձնեն նրա սեփականությունը, այլև այն, որ ամենօրյա քաղաքական-բացատրական աշխատանքի միջոցով և անձնական օրինակով օգնեն սոցիալիստական դաշտերի աշխատավորներին, սովետական առաջավոր ագրոնոմիական գիտության և առաջավորների փորձի ներդրման, ագրոտեխնիկական կանոնների կիրառմամբ

պաշտոնյեն համագումարի որոշման կատարումը։

Հայաստանի բոլշևիկների 14-րդ համագումարի որոշումների հիման վրա, այս տարվանից, որպես հիմնական խնդիր, պետք է ամենուրեք ճիշտ կերպով կիրառվի խոտադաշտային ցանքաշրջանառությունը։

Ելնելով ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշումից, այս տարի նախատեսվում է ամենուրեք հիմնական վարը կատարել անպայման նախախոփիկ ունեցող գութաններով. այդ ձեռնարկումը կնպաստի պայքարելու մոլախոտերի դեմ։

Այս տարի ռեսպուբլիկայում ձեռնարկվում է դաշտապաշտպան անտառագոտիների ստեղծումը։ Անհրաժեշտ է այժմվանից կոլխոզներում պատրաստել ծառերի կտրոններ, սերմեր հավաքել՝ տնկարաններում ցանելու համար և յուրաքանչյուր կոլխոզում ստեղծվի 1—2 հեկտար տնկարան՝ տնկիներ աճեցնելու համար։ Պետք է առանձնահատուկ ուշադրություն դարձնել ջրամբարների և լճակների պատրաստման գործին։

Նշված խնդիրների հաջող լուծումը սերտորեն կախված է այս տարվա գարնանացանի լավագույն նախապատրաստումից, որին արդեն ձեռնամուխ է եղել ռեսպուբլիկայի կոլխոզային գյուղացիությունը։ Բազմաթիվ կոլխոզներ և ՄՏԿ-ներ զգալի աշխատանք են կատարել այս ուղղությամբ։



Ախուրյանի շրջանի երկու ՄՏ կայաններն էլ (Ախուրյան և Ղարիբջանյան) արդեն ավարտել են բոլոր տրակտորների և կցվող գյուղգործիքների նորոգումը։ Ղարիբջանյանի ՄՏ կայանը տրակտորների և կցվող գործիքների նորոգումն ավարտել է սահմանված ժամկետից 3 ամիս շուտ։ Այս ՄՏ կայանը նոր սոցիալիստական պայմանագիր է կնքել Ախուրյանի ՄՏ կայանի հետ գարնանացանը բարձր որակական ցուցանիշներով ավարտելու համար։ Ղարիբջանյանի ՄՏ կայանի մեխանիզատորները պարտավորվել են գարնանացանի պլանը կատարել 105 տոկոսով, աշխատանքային 7 օրում։

Սակայն նույն շրջանում խիստ ետ է մնում դաշտերի պարարտացումը։ Տեղական պարարտանյութը դաշտ փոխադրելու պլանը առ 25-ը հունվարի կատարված է հազիվ 50 տոկոսով։ Պարարտացման գործում ետ են մնում շրջանի Ազատանի, Արևվալի, Կապսի, Ախուրիկի, Առափի կոլխոզները։ Տեղական պարարտանյութը պահպանելու գործում չեն կիրառվում ագրոտեխնիկական միջոցառում-

ները։ Գոմաղբը շրջանի շատ գյուղերում մեծ կույտերով չեն պահում, որը պատճառ է դառնում գոմաղբի ամենաարժեքավոր սննդանյութի— ազոտի կորստյան։

Ախուրյանում և մի քանի այլ շրջաններում գարնանացանի նախապատրաստման թերությունները չպետք է բացատրել միայն այդ շրջանների Գործադիր Կոմիտեների գյուղատնտեսական բաժինների ու ՄՏ կայանների ագրոպերսոնալի օգնության ու ղեկավարության անբավարար վիճակով։ Այդ պետք է բացատրել գլխավորապես նրանով. որ տեղի պարտիական կազմակերպությունները բավարար չափով չեն զբաղվում գարնանացանի նախապատրաստման խնդիրներով, թույլ է քաղաքական-մասսայական աշխատանքը կոլխոզային գյուղացիության և ՄՏԿ-ի աշխատողների մեջ, գյուղի ագիտատորները ակտիվ չեն միջամտում գարնանացանի նախապատրաստման այդ անչափ կարևոր գործին։

Գարնանացանի հաջող նախապատրաստումը զգալի չափով կախված է կոլխոզային գյուղացիության մեջ կատարվող քաղաքական-մասսայական աշխատանքի թափից, նրա կոնկրետությունից և նպատակասլացությունից։



Գարնանացանի նախապատրաստման այս եռուն շրջանում պարտիական կազմակերպությունները և ագիտատորները պետք է հետապնդեն մի նպատակ՝ բոլոր կոլխոզնիկներին ու կոլխոզնիկուհիներին, սովխոզների ու ՄՏ կայանների բանվորներին ու ծառայողներին մոբիլիզացնել օրինակելիորեն նախապատրաստելու և կազմ ու պատրաստ դիմավորելու հետպատերազմյան ստալինյան հնգամյակի 4-րդ տարվա գարնանացանը։ Քաղաքական ագիտացիան պետք է այնպես կազմակերպել, որ այն կոլխոզնիկներին առաջ մղի դեպի աշխատանքային նորանոր սխրագործությունների, կոլխոզնիկներին դաստիարակի աշխատանքի նկատմամբ սոցիալիստական վերաբերմունքի զգացումով, ամրացնի կարգապահությունը և նպաստի կոլխոզնիկների քաղաքական ու արտադրական ակտիվության բարձրացմանը։

Սիստեմատիկաբար պարզաբանելով պարտիայի ու կառավարության որոշումները, միջազգային իրադրության հարցերը, Սովետական պետության ստալինյան արտաքին քաղաքականությունը, գյուղական ագիտատորները պետք է ամենօրյա զրույցներ կազմակերպեն արտադրական հարցերի շուրջը։ Գործնական հարցերի շուրջը կազմակերպ-

ված այդ զրույցները պետք է օգնեն կոլ-
տնտեսականներին, կոլխոզների վարչություննե-
րին, որպեսզի նրանք այժմվանից ամենուրեք
ստուգեն սերմացուների վիճակը, պաշտպա-
նեն կոնդիցիան, այնտեղ, ուր պակասում է
սերմացուն, անհապաղ ձեռք բերեն այն։
Նախալեռնային և լեռնային շրջաններում
հարկավոր է կազմակերպել ձյան կուտակում
դաշտերում և համապատասխան քանակու-
թյամբ գոմաղբ ու տեղական աղբ պատրաս-
տել աշնանացանին վաղ գարնանային սնու-
ցում տալու համար։ Արագ կերպով ավարտել
գյուղգործիքների նորոգումը և լրացնել պա-
կասը, ստուգել և ճշտել բրիգադաների ու օ-
ղակների կազմը։ Կոլխոզներում կրկին ան-
գամ ճշտել արտադրական նորմաները։ Կազ-
մել և բոլոր բրիգադաներին ու օղակներին
հասցնել 1949 թվի գյուղատնտեսական տար-
վա պլանային առաջադրանքները, յուրաքան-
չյուր բրիգադայում քննել դրանք և նոր, բար-
ձր պարտավորություններ վերցնել։
Ագիտատորները պետք է միջամտեն, որ-
պեսզի ՄՏԿ-երում կրկին անգամ ստուգվի
գյուղգործիքների և տրակտորների նորոգման
որակը և բոլոր մեքենաները պատրաստ վի-
ճակում պահվեն գարնանացանի դուրս գալու
համար։



Գարնանացանի հաջող նախապատրաս-
տումը մեծապես կախված է սոցիալիստա-
կան մրցության կազմակերպումից։ Ագիտա-
տորները, հանդես գալով որպես մրցության
կազմակերպիչներ, կոլխոզնիկներին ու կոլ-
խոզնիկուհիներին, ՄՏԿ-ի և սովխոզների
բանվորներին ու ծառայողներին պետք է ամ-
բողջապես ներգրավեն սոցիալիստական մըր-
ցության մեջ։ Պետք է հասնել այն բանին,
որ ամեն մի աշխատավոր ստանձնի նոր ու
ավելի բարձր պարտավորություններ և
պայքարի այդ պարտավորությունների կա-
տարման ու գերակատարման համար։ Ագի-
տատորները պետք է կազմակերպեն պար-
տավորությունների կատարման ստուգումը,
առաջավորների փորձը դարձնեն լայն մաս-
սաների սեփականությունը, խրախուսեն ա-
ռաջավորներին, ընկերական օգնություն
ցույց տան հետ մնացողներին, նրանց հաս-
ցնելով առաջավորներին։
Հունվարի 25-ից ռեսպուբլիկայի կոլխոզ-
ներում սկսվել են հաշվետու-ընտրական ժո-
ղովները։ Կոլխոզային գյուղացիությունը
հանրագումարի է բերում անցյալ տարվա իր
գործունեությունը և փաստորեն գործնական
միջոցառումներ մշակում ներկա տարվա իր
աշխատանքների համար։ Ագիտատորների

խնդիրն է՝ բացատրել կոլխոզնիկներին ու կոլխոզնիկուհիներին այդ ժողովների նշանակությունը, օգնել կոլխոզների վարչություններին բարձր կազմակերպվածությամբ և կոլխոզային գյուղացիության ակտիվ մասնակցությամբ անցկացնելու հաշվետու-ընտրական ժողովները, բոլշևիկյան քննադատության և ինքնաքննադատության ծավալելու միջոցով վեր հանել կոլխոզների վարչությունների աշխատանքներում տեղ գտած սխալներն ու թերությունները և գործարար առաջարկներ ընդունել աշխատանքների բարելավման համար։

Հետպատերազմյան հնգամյակի չորրորդ տարին պետք է հանդիսանա գյուղատնտեսության կուլտուրայի, ընդհանուր բերքատվության վճռական բարձրացման, անասնապահության հզոր վերելքի, կոլխոզների հանրային տնտեսության հետագա ամրապնդման տարի։ Այս խնդիրների կենսագործման համար մղվող պայքարում մեր ագիտատորները պետք է ձգտեն է՛լ ավելի բարձրացնել սոցիալիստական գյուղի աշխատավորների ստեղծագործական ակտիվությունը։

Գ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

---

ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑԻ ԺԱՄԱՆԱԿ

# ՀԱՂԹԱՆԱԿԻ ԹՎԵՐ

Մի քանի օր առաջ հրապարակվեց ՍՍՌՄ Մինիստրների Սովետին կից Կենտրոնական Վիճակագրական Վարչության հաղորդագրությունը՝ ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության վերականգնման ու զարգացման պետական պլանի 1948 թվի կատարման արդյունքների մասին։

Հաղորդագրության մեջ ասված է, որ ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի 1948 թվի պլանը կատարված է 106 տոկոսով։ ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքի՝ հնգամյակի առաջին երեք տարիների պլանը 1946, 1947 և 1948 թվերին կատարված է 103 տոկոսով։

Արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների արտադրությունը 1948 թվին, 1947 թվի համեմատությամբ, փոփոխվել է հետևյալ կերպ (տոկոսներով). չուգուն՝ 122, պողպատ՝ 128, գլանվածք՝ 128, ածուխ՝ 114, նավթ՝ 112, էլեկտրաէներգիա՝

115, մագիստրալային շոգեքարշ՝ 153, տրոլեյբուս՝ 174, բեռնատար ավտոմեքենա՝ 143, մարդատար ավտոմեքենա՝ 210, վատեր մեքենա՝ 205, ջուլհակի դազգահ՝ 178, տրակտոր՝ 204, գյուղատնտեսական մեքենա՝ 199, հացահատիկային կոմբայն՝ 5,1 անգամ, բարդ կալսիչներ՝ 267, ավտոդող՝ 138, թուղթ՝ 120, ցեմենտ՝ 137, պատուհանի ապակի՝ 120, բամբակեղեն գործվածքներ՝ 134, բրդեղեն գործվածքներ՝ 128, կաշվե կոշիկ՝ 123, ռետինե կոշիկ՝ 137, գուլպա՝ 144, միս՝ 125, կենդանական յուղ՝ 137, բուսական յուղ՝ 133, շաքար՝ 170, օճառ՝ 145, սպիրտ՝ 150 տոկոսով և այլն։

ՍՍՌՄ ամբողջ արդյունաբերության համախառն արտադրանքը 1948 թվին, 1947 թվի համեմատությամբ, աճել է 27 տոկոսով և նախապատերազմյան 1940 թվի մակարդակը գերազանցել է 18 տոկոսով։

Գյուղատնտեսության մեջ, ՀամԿ(բ)Պ Կենտկոմի Փետրվարյան պլենումի որոշման իրագործման հիման վրա, 1948 թվին ձեռք են բերված նորանոր զգալի հաջողություններ։

Զնայած Պովոլժյեի շրջանների մեծ մասում օդերևութաբանական անբարենպաստ պայմաններին, հացահատիկային կուլտուրանե-



րի համախառն բերքը ամբողջ ՍՍՌՄ-ում կազմել է ավելի քան 7 միլիարդ փութ և հետևաբար աննշան պակասությամբ հասել է նախապատերազմյան 1940 թվի մակարդակին, իսկ հացահատիկային կուլտուրաների մեկ հեկտարի բերքատվությունն անցել է նախապատերազմյան մակարդակից։

1948 թվի բերքի ցանքատարածությունների աճը, 1947 թվի համեմատությամբ, կազմել է 13,8 միլիոն հեկտար, այդ թվում հացահատիկային կուլտուրաների գծով 10 միլիոն հեկտար։

1948 թվին կոլխոզներում արագացվել է հանրային անասնապահության զարգացման տեմպը, նշանակալի չափով ավելացել է անասունների գլխաքանակը և զգալիորեն բարձրացել անասունների մթերատվությունը։ Անասունների գլխաքանակը կոլխոզներում 1949 թվի հունվարի 1-ին, 1948 թվի հունվարի 1-ի համեմատությամբ, ավելացել է խոշոր եղջերավոր անասուններինը՝ 23 տոկոսով, խոզերինը՝ 75 տոկոսով, ոչխարներինը և այծերինը՝ 16 տոկոսով և ձիերինը՝ 15 տոկոսով։

Ավելացել է նաև կոլխոզնիկների, բանվորների և ծառայողների անհատական օգտագործման անասունների գլխաքանակը։

ՍՍՌՄ Եվրոպական մասի տափաստանային և անտառա-տափաստանային շրջաններում 1948 թվին դաշտապաշտպան անտառագոտիներ են տնկվել 199 հազար հեկտար ընդհանուր տարածությամբ։ 1949 թվին անտառներ տնկելու համար նախապատրաստվել է 270 հազար հեկտար հող, անտառատնկարաններում աճեցվել է մեկ միլիարդ 869 միլիոն տունկ, կոլխոզները կառուցել են ավելի քան 2800 լճակ և ջրամբար։

Գյուղատնտեսությունն ընթացիկ տարում պետությունից ստացել է երեք անգամ ավելի շատ տրակտոր, երկու անգամ ավելի շատ ավտոմեքենա, երկու անգամ ավելի շատ գյուղատնտեսական մեքենա, քան նախապատերազմյան 1940 թվին։

***

Երկաթուղային տրանսպորտի բեռնաշրջանառությունը 1948 թվին, 1947 թվի համեմատությամբ, ավելացել է 27 տոկոսով և գերազանցել է նախապատերազմյան 1940 թվի մակարդակը։ Երկաթուղիների օրական միջին բեռնումը 1948 թվին, 1947 թվի համեմատությամբ, ավելացել է 19,3 տոկոսով։ Երկաթուղային տրանսպորտում օրական միջին բեռնման ընդհանուր



պլանը 1948 թվին կատարվել է 104 տոկոսով։

Բեռների փոխադրումները գետային տրանսպորտով 1948 թվին, 1947 թվի համեմատությամբ ավելացել են 29 տոկոսով։

Բեռների փոխադրումները ծովային տրանսպորտով 1948 թվին, 1947 թվի համեմատությամբ, ավելացել են 11 տոկոսով։

Ավտոմոբիլային տրանսպորտի բեռնաշրջանառությունը 1948 թվին, 1947 թվի համեմատությամբ, ավելացել է 23 տոկոսով և նախապատերազմյան 1940 թվի մակարդակը գերազանցել է համարյա մեկ ու կես անգամ։

***

Կապիտալ բոլոր աշխատանքների ծավալը 1948 թվին, 1947 թվի համեմատությամբ, կազմել է 123 տոկոս։

1946, 1947 և 1948 թվերին կառուցվել, վերականգնվել և գործարկվել է մոտ 4000 պետական արդյունաբերական ձեռնարկություն։

Հետպատերազմյան հնգամյակի երեք տարվա ընթացքում քաղաքներում և բանվորական ավաններում պետական ձեռնարկությունները, հիմնարկներն ու տեղական Սովետները, ինչպես նաև բնակչությունը

պետական վարկի օգնությամբ կառուցել և վերականգնել են մոտ 51 միլիոն քառակուսի մետր ընդհանուր տարածությամբ բնակարան։ Գյուղական վայրերում 1946, 1947 և 1948 թվերին կառուցվել ու վերականգնվել է ավելի քան մեկ միլիոն 600 հազար բնակելի տուն։

***

Քարտերը վերացվելուց հետո սովետական առևտրի ծավալման հիման վրա, 1948 թվին, համեմատած 1947 թվի հետ, զգալիորեն ավելացել է պարենային ու արդյունաբերական ապրանքների վաճառքը պետական և կոոպերատիվ մանրածախ առևտրում, այդ թվում հացի վաճառքը 56 տոկոսով, շաքարինը՝ երկու անգամ, հրուշակեղենինը՝ 45 տոկոսով, բամբակեղեն գործվածքներինը՝ 56 տոկոսով, մետաքսեղեն գործվածքներինը՝ 29 տոկոսով, կոշկեղենինը՝ 45 տոկոսով։

1948 թվին զգալիորեն ընդարձակվել է առևտրական ցանցը։ Տարվա ընթացքում պետական և կոոպերատիվ կազմակերպությունները բացել են 35 հազար նոր խանութ ու կրպակ։

Կոլխոզային շուկաներում վաճառված գյուղատնտեսական մթերքների քանակը



զգալիորեն ավելացել է համեմատած 1947 թվի հետ և մեծ չափով գերազանցել է նախապատերազմյան մակարդակը։ Հատկապես ավելացել է մսի, կաթնամթերքի ու բանջարեղենի վաճառքը։

Քաղաքներում կոոպերատիվ առևտուրը ծավալելու վերաբերյալ կառավարության որոշումից հետո անցած երկու տարվա ընթացքում կոոպերատիվ շուկայի գներն իջել են երեք անգամ, իսկ կոլխոզային շուկայի գները նույն ժամանակաշրջանում ավելի քան չորս անգամ։

***

ՍՍՌՄ ժողովրդական տնտեսության ընդհանուր վերելքի և սպառման առարկաների արտադրության աճման կապակցությամբ, 1948 թվի ապրիլին իրականացվեց մի շարք ապրանքների պետական մանրածախ գների իջեցման երկրորդ էտապը և 1948 թվի վերջերին անցկացվեց մի քանի ապրանքների գների հետագա իջեցում։

Պարենային ու արդյունաբերական ապրանքների պետական մանրածախ գներն իջեցվելու և դրա հետ միասին կոոպերատիվ առևտրում ու կոլխոզային շուկայում գներն իջեցվելու շնորհիվ, ռուբլու գնողունակությունը բարձրացավ երկու անգամ։

Իրա հետևանքով, ինչպես նաև դրամական աշխատավարձի աճման կապակցությամբ, բանվորների և ծառայողների ռեալ աշխատավարձը 1948 թվին, 1947 թվի համեմատությամբ, բարձրացել է ավելի քան երկու անգամ։

***

1948 թիվը բնորոշվում է կուլտուրական շինարարության հետագա զարգացումով և աշխատավորների կուլտուրական մակարդակի բարձրացումով։

Տարրական, յոթնամյա և միջնակարգ դպրոցներում սովորողների թիվը 1948 թվին, 1947 թվի համեմատությամբ, աճել է ավելի քան 2 միլիոն մարդով։

Բարձրագույն ուսումնական հաստատությունների ուսանողների թիվը հասել է 734 հազար մարդու, որը 26 տոկոսով գերազանցում է 1940 թվի քանակից։ Բացի դրանից, 270 հազար ուսանող սովորում է հեռակա բարձրագույն ուսումնական հաստատություններում։ 1948 թվին բարձրագույն ուսումնական հաստատություններն ավարտել է 122 հազար մարդ։ Երիտասարդ մասնագետների այդ շրջանավարտների թիվը 20 հազարով ավելի է, քան նախապատերազմյան 1940 թվին։



Տեխնիկումներում և այլ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատություններում սովորողների թիվը հասել է 1 միլիոն 94 հազար մարդու, որը 1940 թվից գերազանցում է 33 տոկոսով։ Տեխնիկումները և այլ միջնակարգ մասնագիտական ուսումնական հաստատությունները 1948 թվին ավարտել է 252 հազար մարդ, այսինքն 44 հազարով ավելի, քան 1940 թվին։

1948 թվին աճել է բուժական հաստատությունների, սանատորիաների և հանգստյան տների ցանցը։ Մահճակալների թիվը հիվանդանոցներում, 1947 թվի համեմատությամբ, ավելացել է 27 հազարով, տեղերի թիվը սանատորիաներում և հանգստյան տներում ավելացել է 28 հազարով. բժիշկների թիվը 1948 թվին, 1947 թվի համեմատությամբ, ավելացել է 24 հազար մարդով։

Հետպատերազմյան հնգամյակի երեք տարվա ընթացքում վերականգնվել և նոր կառուցվել են ջրմուղներ և ջրմուղային ցանցը՝ 151 քաղաքում ու բանվորական ավանում, տրամվայը՝ 15 քաղաքում, տրոլեյբուսը՝ 5 քաղաքում, գազաֆիկացվել է 195 հազար բնակարան, կատարվել են քաղաքների կանաչապատման մեծ աշխատանքներ։

***

Օկուպացիայից ազատագրված շրջաններում 1948 թվին կատարվել են կապիտալ աշխատանքներ 20 միլիարդ ռուբլու չափով, չհաշված չկենտրոնացված կապիտալ ներդրումները։

Օկուպացիայից ազատագրված շրջանների արդյունաբերության համախառն արտադրանքը 1948 թվին, 1947 թվի համեմատությամբ, ավելացել է 41 տոկոսով։ Գերմանական օկուպացիայից ազատագրված շրջաններում 1948 թվին քաղաքներում կառուցվել և վերականգնվել են ընդհանուր տարածությամբ մոտ 8 միլիոն քառակուսի մետր բնակարան և գյուղական վայրերում՝ ավելի քան 300 հազար բնակելի տուն։

---



## ԱՇԽԱՏՈՒՄ ԵՆ 1950 ԹՎԻ ՀԱՇՎԻՆ

Երևանի Ձերժինսկու անվան Դազգահաշինական գործարանը մեր ռեսպուբլիկայի այն առաջավոր արդյունաբերական ձեռնարկություններից է, որոնք ժամկետից շուտ կատարելով 1948 թվի տարեկան պլանը, արտադրանքի թողարկման մակարդակի տեսակետից հասան ստալինյան նոր հնգամյակի վերջին տարվա՝ 1950 թվի մակարդակին։ Ձերժինսկու անվան գործարանի աշխատողների օրինակը ցայտուն կերպով ցույց է տալիս, թե ինչպիսի խանդավառությամբ են աշխատում սովետական մարդիկ և ստալինյան նոր հնգամյա պլանը ժամկետից շուտ կատարելու ինչպիսի վճռականությամբ են լցված նրանք։

Հնգամյակի անցած երեք տարիներում գործարանը մեծ նվաճումներ է ձեռք բերել դազգահների թողարկման ասպարեզում։ 1946 թվի համեմատությամբ դազգահների

թողարկումը 1947 թվին ավելացել է 228 տոկոսով, իսկ 1948 թվին՝ 375 տոկոսով։ Յուրաքանչյուր դազգահի պատրաստման համար գործադրվող ժամանակը 1946 թվի 2.200 նորմա-ժամից իջել, հասել է 600 նորմա-ժամի, դազգահների ինքնարժեքը 1946 թվի համեմատությամբ իջել է 76 տոկոսով։ Աշխատելով Մոսկվայի առաջավոր ձեռնարկությունների օրինակով, գործարանը 1948 թվի 11 ամսում տվեց 834 հազար ռուբլու արտապլանային կուտակում և չորրորդ եռամսյակում ամբողջովին հրաժարվեց պետական դոտացիայից։

Գործարանի առաջավոր ցեխերից է № 2 մեխանիկական ցեխը, որտեղ պատրաստվում են դազգահի շուրջ 40 տեսակ տամնանիվներ և 80 տեսակ այլ մանր դետալներ։ Դազգահների դետալների պատրաստման 1948 թվի պլանը ցեխը կատարեց նոյեմբերի 15-ին և գերազանցեց հնգամյակի վերջին տարվա համար նախատեսված արտադրանքի մակարդակը։ Ամբողջ տարվա ընթացքում ցեխի կոլեկտիվը մոտ 25 տոկոսով ավելի դազգահի դետալներ տվեց, քան նախատեսված էր 1950 թվի համար։

Ցեխի ձեռք բերած այս հաջողությունները հետևանք են այն բանի, որ այնտեղ գոյու-



թյուն ունի աշխատանքի ճիշտ կազմակերպում, լավ է գլխավորվում բանվորների արտադրական խանդավառությունը, ստախանովյան շարժման ծավալումը։ Ցեխի լավ աշխատանքը հետևանք է նաև նրա վարիչ, կոմունիստ Ժորա Առաքելյանի թափած ջանքերի, նրա հմուտ ղեկավարության։ Նա աճել ու լավագույն մասնագետ է դարձել Ձերժինսկու անվան գործարանում և հինգերորդ տարին է, ինչ ղեկավարում է № 2 մեխանիկական ցեխը։

Ահա թե ինչ պատմեց մեզ իր աշխատանքի մասին ընկ. Ժ. Առաքելյանը։

— Իմ կարծիքով ցեխի պլանների կատարման, արտադրողականության բարձրացման գործում վճռական նշանակություն ունի ցեխի վարիչի և վարպետների աշխատանքը, մանավանդ այնպիսի ցեխերում, ինչպիսին մերն է, որտեղ բանվորների ճնշող մեծամասնությունը երիտասարդներ են։

Դեռ ոչ շատ առաջ, 1947 թվին մեզ առաջադրանք էր տրված ամսական պատրաստել ընդամենը 30 կոմպլեկտ դետալներ և ցեխն այն հազիվ էր կատարում։ 1948 թվին սկսեցինք տալ 60 կոմպլեկտ, իսկ այս տարվա սկզբին մեր ցեխի բանվորները պարտավորվեցին տալ 100 կոմպլեկտ դետալներ և

պատվով են կատարում իրենց վերցրած պարտավորությունը։

Մեր բանվորների արտադրական խանդավառությունը շատ բարձր է, յուրաքանչյուրը ձգտում է ավելի շատ արտադրանք տալ Հայրենիքին և պատվով դուրս գալ մրցությունից, բայց այդ խանդավառությունն սպասած արդյունքը չի տա, եթե մենք, ղեկավարներս ճիշտ չկլխավորենք այն։ Ես գտնում եմ, որ ցեխի պետը, ցեխի ընդհանուր ղեկավարությունն ապահովելուց բացի— այն է՝ հումույթի, կիսաֆաբրիկատի, գործիքների հայթայթումը, բանվորներին գծագրերով ժամանակին ապահովելը, արտադրանքի հաշվառումը, բանուժի դասավորումը և այլն,— պետք է նաև օգնի յուրաքանչյուր բանվորի՝ կատարելու և գերակատարելու իր առաջադրանքները, խրախուսի առաջավորներին, անձամբ հետաքրքրվի, թե ինչու այս, կամ այն բանվորը հետ է մնում։ Այս գործում ցեխի վարիչի և վարպետի առաջին օգնականները ցեխային ագիտատորներն են։

Այժմ խոսենք օրինակներով։ Երբ մեզ տրվեց նոր դազգահի համար ամսական 30 կոմպլեկտ դետալներ պատրաստելու առաջադրանքը, ես այն ժամանակ էլ տեսա, որ այնպիսի տեխնիկայի համար, ինչպիսին մեր



ցեխն ունի, այդ առաջադրանքը շատ փոքր է։ Բայց տեխնիկան քիչ էր, անհրաժեշտ էր, որ բանվորները կարողանային լրիվ չափով օգտագործել այն։ Իսկ մեր ցեխի բանվորների մեծագույն մասը երիտասարդներ էին, քիչ փորձի տեր։ Ես որոշեցի հենց այդտեղից էլ սկսել, այսինքն սովորեցնել յուրաքանչյուր բանվորի, նրա դազգահի մոտ անձնական օրինակով ցույց տալ, թե ինչպես կարելի է ավելի շատ և լավորակ արտադրանք տալ։ Եվ ահա սովորելով տեխնիկայի տիրապետման խմբակներում և աշխատելով իմ ու ցեխի վարպետների տված ցուցմունքներով մեր երիտասարդ բանվորները արագ քայլերով առաջ շարժվեցին։

Զորացրվելով Սովետական Բանակի շարքերից, մեր ցեխում աշխատանքի անցավ երիտասարդ ֆրեզերագործ, կոմերիտական Գրիգոր Սեմերջյանը։ Երբ նա լավ տիրապետեց իր նոր դազգահին, ես նրան ասացի. Գրիգոր, հիանալի ավտոմատ դազգահ ունես, երբ այն գործի ես գցում, ինքդ պարապ ես կանգնում, եկ այդ ժամանակն օգտագործիր՝ կողքի դազգահն էլ աշխատեցրու,— ասի և ինքս էլ ցույց տվի, թե ինչպես պետք է աշխատել։ Գրիգորը, ոգևորված, այդ օրվանից

սկսեց աշխատել երկու դազգահի վրա։ Նատ չանցած նա դիմեց ինձ, խնդրելով իրեն հանձնել նաև երրորդ դազգահը։ Ես կատարեցի նրա ցանկությունը։ Երեք դազգահի վրա աշխատելով Գրիգորն իր պլանները ըսկըսեց կատարել 350—400 տոկոսով։ Ցեխի ագիտատոր ընկ. Ավետիք Հովակիմյանը իր զրույցների ժամերին բանվորներին պատմում էր Գրիգորի աշխատանքի մասին, ոգեշընչում նրանց՝ երիտասարդ ֆրեզերագործի նման աշխատել։ Եվ իրոք, Սեմերջյանի օրինակը շատերին ոգեշնչեց։ Նրանց նույնպես օգնության հասանք ես և վարպետները, յուրաքանչյուրի հետ խորհրդակցելով, թե ինչպես ավելի լավ աշխատել։ Եվ ահա կարճ ժամանակում ցեխի ստախանովականների թիվը բազմապատկվեց։ Ստախանովականի անուն վաստակեցին խառատներ Ս. Հարությունյանը, Ե. Քեշիշյանը, Ա. Մովսիսյանը, Թ. Հարությունյանը, հղկող Ի. Բոգդանովը և ուրիշներ։

Մի քանի ամիս առաջ հղկող Վ. Հակոբյանին հանձնարարեցինք պատրաստելու դազգահի քանոնները։ Նա օրական հղկում էր 35—40 քանոն, այդպիսով գերակատարում իր պլանները և շատ գոհ էր իր աշխատանքից։ Բայց ուշադրությամբ հետևելով նրա



աշխատանքին, հերթափոխի վարպետ Ա. Հովակիմյանը, որը միաժամանակ և ցեխի ագիտատորն է, նկատեց, որ Հակոբյանը իզուր տեղը շատ ավելորդ աշխատանք է կատարում այն պատճառով, որ հենց սկզբից քանոնները ճիշտ չի ամրացնում դազգահին։ Վարպետն ինքը կանգնեց Հակոբյանի դազգահի մոտ և ցույց տվեց, թե ինչպես պետք է ճիշտ կապել քանոնը և ինքը նույն ժամանակում կրկնակի անգամ ավելի քանոն հղկեց։ Հակոբյանն սկսեց այդ ձևով աշխատել և այժմ մոտ երկու անգամ ավելի արտադրանք է տալիս։

Ագիտատոր Ա. Հովակիմյանի ուշադրությունը գրավեց նաև խառատ Լ. Գալստյանի աշխատանքը։ Ճիշտ է, Գալստյանը կատարում և նույնիսկ գերակատարում էր իր առաջադրանքները, բայց ագիտատորը նկատեց, որ նա համարյա երկու անգամ պակաս ատամնավոր անիվ է պատրաստում, քան նույն աշխատանքը կատարող խառատ Ա. Մովսիսյանը։ Ագիտատորն անձամբ խոսեց Գալստյանի հետ, պատմեց ստախանովական Ա. Մովսիսյանի մասին. նրանք միասին գնացին և դիտեցին վերջինիս աշխատանքը։ Եվ ահա Գալստյանը 15—16 ատամնավոր ա-

նիվի փոխարեն օրական սկսեց պատրաստել 22—25 հատ։

Վերջում ցեխի պետ ընկ. Ժ. Առաքելյանն ավելացրեց.

—Պլանների կատարման, աշխատանքի նոր մեթոդների կիրառման գործում աչքի են ընկնում ցեխի կոմունիստները։ Իրենց աշխատանքով նրանք լավագույն օրինակ են տալիս ցեխի մյուս բանվորներին։

Ահա մի օրինակ։ Ցեխի բանվորներից մեկին հանձնարարված էր պատրաստել որդաձև ատամնանիվներ. նա թերակատարում էր այդ առաջադրանքը։ Ես խոսեցի կոմունիստ խառատ Հովհաննես Փափազյանի հետ, որպեսզի նա վերցնի պատրաստելու այդ անիվները։ Փափազյանը համաձայնվեց և աշխատանքից հետո մնաց իր մտածած հարմարանքը պատրաստելու համար։ Հենց հաջորդ օրը կոմունիստ Փափազյանն այդ անիվներից պլանով տրվածից կրկնակի անգամ ավելի պատրաստեց՝ այդպիսով վերացնելով ցեխի աշխատանքում եղած այդ «նեղ տեղը»։

Այսօր մենք կարող ենք պարծանքով ասել, որ շնորհիվ աշխատանքի լավ կազմակերպման, ագիտացիոն աշխատանքի լայն ծավալման, մեր ցեխի բանվորների 75 տոկոսը ստախանովականներ են, իսկ մյուսները հարվածայիններ։

Հ. ՂԱՐԻԲՅԱՆ



# Ի. Վ. ՄԻՉՈՒՐԻՆԻ ՈՒՍՄՈՒՆՔԻ ԷՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Բնության մեծ վերափոխող, ռուս հանճարեղ գիտնական Իվան Վլադիմիրովիչ Միչուրինի անունը, նրա գործերը հայտնի են ոչ միայն Սովետական Միության մեջ, այլև աշխարհի բոլոր երկրներում։

Ի. Վ. Միչուրինն իր 60-ամյա աշխատանքների, բազմաթիվ փորձերի հիման վրա ապացուցեց, որ մարդը կարող է վերափոխել բույսերի բնությունը այնպես, ինչպես ինքն է ցանկանում, որ բնության մեջ բույսերը ենթարկվում են անընդհատ փոփոխությունների և այդ փոփոխություններն արդյունք են այն բանի, որ բույսերը և նրանց շրջապատի արտաքին պայմանները մեկը մյուսի նկատմամբ գտնվում են անընդհատ փոխազդեցության ներքո։ Նա տվեց մարդկությանը իր պատմական նշանաբանը՝ «Մենք չենք կարող շնորհներ սպասել բնությունից,

նրանից այդպիսիները վերցնելն է մեր խնդիրը»։

Ի. Վ. Միչուրինը իր առաջ խնդիր էր դրել՝ աճեցնել բարձր որակի պտուղներ ունեցող բույսեր, հնարավոր դարձնել Ռուսաստանի հյուսիսային և միջին գոտիներում մշակելու տանձենի, լավագույն խնձորենի, խաղողի վազ և այլ բարձրարժեք պտղատու բույսերի տեսակներ, հարավային գոտիներում ընտեղծել լավ բերք տվող ցրտակայուն տեսակներ և վերջապես ստեղծել նոր բույսեր, որոնք իրենց պտուղներով համապատասխանեն երկրի պահանջներին, դարձնելով միաժամանակ կուլտուրական պտղաբուծությունը կոլխոզային մասսաների սեփականություն։

Ցարիզմի ժամանակ մեծ գիտնականը շրջապատված էր կրոնամոլների, տգետ չինովնիկների և «դիպլոմավոր» հետադիմական գիտնականների կողմից, որոնք մինչև սովետացումը բոլոր միջոցները գործ դրին խանգարելու, կասեցնելու մեծ գիտնականի ռևոլյուցիոն գործը։ Միայն Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիան վերջ դրեց նրա բոլոր զրկանքներին ու հալածանքներին և



ստեղծեց Ի. Վ. Միչուրինի կյանքի և գործունեության նոր դարաշրջան, երբ նա կարողացավ լրիվ կերպով դրսևորել իր ողջ տաղանդի և ունակությունների ուժը։ Այդ է պատճառը, որ իր կյանքի սովետական շրջանի 16—17 տարվա ընթացքում Ի. Վ. Միչուրինը կրկնակի անգամ ավելի գործ կատարեց երկրի համար, քան նախառևոլյուցիոն շրջանի իր 45 տարվա գործունեության ընթացքում։

Ի. Վ. Միչուրինը փայլուն կերպով ապացուցեց, որ ձեռք բերովի հատկանիշները, որոնք առաջանում են բույսին շրջապատող արտաքին պայմանների ազդեցության ներքո մարդու միջամտությամբ, փոխանցվում են ժառանգաբար, սերնդից-սերունդ։ Օրինակ, եթե սերմերը ծլեցնում և աճեցնում են ագրոտեխնիկական համապատասխան պայմաններում, ապա տարիների ընթացքում սերմերի որակը աստիճանաբար բարձրանում է, այլ կերպ ասած, սերմերը ստանում են նոր որակ, հետևաբար և տեղի է ունենում սորտի լավացում։ Կամ հակառակը. եթե օրինակ, ճակնդեղի սերմերը տարիների ընթացքում ցանվեն և ապա բույսերը մշակվեն վատ պայմաններում, այդ դեպքում ճակնդեղը կորցնում է աստիճանաբար իր լավ հատկությունները և հատկանիշները (համր,

մեծությունը, շաքարայնությունը, ձևը և այլն), որից ընկնում է սորտի արժեքը և հետագա սերունդներում ստացվում է վատորակ ճականդեղ։ Այսպիսով վատ պայմանների ազդեցության շնորհիվ առաջ են գալիս վատ հատկություններ և հատկանիշներ, որոնք և ժառանգաբար փոխանցվում են սերունդներին։ Այստեղից էլ պարզ երևում է, որ մարդը, ստեղծելով համապատասխան պայմաններ, կարող է վերափոխել բույսի բնությունը, առաջացնել նոր հատկանիշներ, որոնք կփոխանցվեն ժառանգաբար։ Բոլոր բույսերը հնարավոր է վերափոխել, սակայն այդ վերափոխման ուղղությունը և աստիճանը կախված է նրանից, թե մարդը բույսի աճման և մանավանդ զարգացման ո՞ր շրջանումն է գործադրում իր կողմից ստեղծված պայմանների ազդեցությունը։

Ակադեմիկոս Լիսենկոն վերափոխում է ցորենների բնությունը։ Ստեղծելով համապատասխան պայմաններ, նա աշնանացան ցորենները դարձնում է գարնանացան և հակառակը, ամառային ցանքերի միջոցով փոխում է կարտոֆիլի ցեղը և այլն։ Բույսերի բնությունը վերափոխելու համար, պետք է նախ լավ հասկանալ նրանց կյանքը, պահանջը դեպի իրենց շրջապատող միջավայ-



րը, ապա ստեղծելով հատուկ պայմաններ, դնել բույսերը և պայմանները այնպիսի փոխազդեցության մեջ, որի հետևանքով բույսերի մեջ առաջանան ցանկացած հատկանիշները։ Ցանկացած հատկանիշներն առաջ բերելուց հետո, դրանք կայունանում են բույսերի համապատասխան մշակության ժամանակ և այդպիսով փոխանցվում ժառանգաբար սերնդե-սերունդ։ Այս ճանապարհով Ի. Վ. Միչուրինը ստացել է նոր սորտեր, որոնք պտղաբուծության մեջ բռնել են իրենց արժանի տեղը։

Բայց նոր սորտեր և բույսեր ստեղծելու համար Ի. Վ. Միչուրինը մեծապես կիրառում էր հիբրիդիզացիա, կամ այլ կերպ ասած՝ խաչաձևում։ Սեռական խաչաձևումներից հետո նա նկատեց, որ ստացված սերունդը (հիբրիդը) ժառանգում է ծնողական հատկանիշների միայն մի մասը, որը հարմարվում է տեղական պայմաններին։ Ի. Վ. Միչուրինը, խաչաձևելով հյուսիսային ցրտակայուն, բայց վատորակ պտուղներ ունեցող սորտերը հարավային ոչ ցրտակայուն, բայց լավորակ պտուղներ ունեցող տեսակների հետ, հետապնդում էր ստանալու մի այնպիսի սերունդ, որը օժտված լինի և ցրտակայունությամբ և ունենա հարավային

սորտի լավորակ պտուղներ։ Այդ նպատակին հասնելու համար երկարամյա փորձերից հետո նա եկավ այն եզրակացության, որ «Արտադրող ծնողական բույսերի հաջող ընտրությունը կապահովվի միայն այն դեպքում, եթե նրանցից յուրաքանչյուրը վերցված լինի հեռավոր տարբեր աշխարհագրական պայմաններից»։ Օրինակ, լավ տանձենի ստանալու համար, նա ուսսուրիական մանր պտուղ ունեցող, բայց ցրտակայուն տանձենին խաչաձևում էր ֆրանսիական ոչ ցրտակայուն, բայց լավորակ պտուղ ունեցող տանձենու հետ («Բերե-ռոյալ»)։ Ստացված հիբրիդը պարունակում է ուսսուրիական տանձենու ցրտակայունությունը և ֆրանսիական տանձենու խոշոր և համեղ պտուղ տալու հատկությունը։ Այս դեպքում երկու ծնողներն էլ բերված են աշխարհագրական հեռավոր վայրերից։ Ստացված նոր սորտը Միչուրինը անվանեց «Միչուրինի Բերե ձմեռային»։ Նման խաչաձևումների միջոցով Ի. Վ. Միչուրինը պարզեց, որ տարբեր վայրերից բերված բույսերի խաչաձևումից հետո ստացված հիբրիդները ավելի լավ են հարմարվում նոր միջավայրի պայմաններին։ Ծնողական զույգերի ընտրության ժամանակ Ի. Վ. Միչուրինը մեծ արժեք էր տալիս նաև



այն բանին, թե նրանք ինչ հասակ ունեն, առողջ են, թե հիվանդ, ուժեղ են, թե ուժասպառ և այլն. օրինակ, եթե մայր արտադրողը երիտասարդ է, կամ թույլ զարգացած, կամ մեծահասակ է և ուժասպառ, ապա խաչաձևումից հետո հիբրիդում նրա հատկանիշները ավելի թույլ են արտահայտվում։ Բայց Ի. Վ. Միչուրինը չէր սահմանափակվում միայն ծնողական զույգերի հաջող ընտրությամբ, նա հաշվի էր առնում նաև ճյուղերի դասավորումը ծառերի վրա, ծաղիկների դիրքը ճյուղերի վրա, լույսի և սննման պայմանները և այլն. Եթե ծաղիկները գտնվում են սաղարթի մեջ, ստվերի տակ, ապա նրանց խաչաձևումից ստացված հիբրիդները ավելի թույլ են դրսևորում ծնողական հատկանիշները և հակառակը։

Ի. Վ. Միչուրինն առաջին գիտնականն էր, որ հայտնաբերեց բույսերի ժառանգության փոխանցման ուժը։ Այսպես, օրինակ, մեծահասակ, բայց տվյալ վեգետացիոն շրջանում զանազան պատճառներից թուլացած պտղատու ծառերը, կամ հիբրիդ ծառերը պտղաբերության առաջին տարիներին իրենց հատկությունները և հատկանիշները թույլ են փոխանցում ժառանգաբար, իսկ դրան հակառակ լրիվ զարգացած և առողջ ծառերը

ուժեղ են փոխանցում սերնդին իրենց հատկությունները և հատկանիշները։

Ի. Վ. Միչուրինը գիտեր, որ բնության մեջ բույսերը բեղմնավորվում են ոչ թե պատահական փոշու միջոցով, այլ փոշիների հատուկ ընտրության միջոցով։ Վարսանդի վրա կարող են կուտակվել բազմաթիվ տեսակների փոշիներ, սակայն վարսանդը նրանցից ընտրում է այնպիսի փոշիներ, որոնք համապատասխանում են իր կառուցվածքին և բնությանը։ Հաշվի առնելով բույսերի ընտրողական ընդունակությունը, Ի. Վ. Միչուրինը խաչաձևման ժամանակ գործադրում էր մերձակից սորտերի և ձևերի փոշեխառնուրդ։ Այդ ձևով նա ստացավ խնձորենու լավագույն տեսակ՝ «Շամպային—Կիտայկա» և այլն։

Երիտասարդ հիբրիդ բույսերը, նախքան լրիվ ձևակերպվելը, լինում են անկայուն և հեշտությամբ ենթարկվում են արտաքին ազդեցություններին։ Եթե քիչ բերքատու այդպիսի հիբրիդ ծառերի սաղարթի ներքևի ճյուղերին պատվաստվի մի ուրիշ սորտի հասակավոր և պտղատու ծառի կտրոններ, ապա այդ երիտասարդ ծառի վրա մոտակա տարիների ընթացքում տեղի կունենան մեծ փոփոխություններ՝ բերքատվությունը մի



քանի անգամ շատանում է, պտուղները փոխում են իրենց ձևը, նրանք փոքրանում են և հասունացումը ուշանում է 2—3 շաբաթով։ Պատվաստացուն իր հերթին ևս փոխվում է, բայց ոչ ուժեղ կերպով։ Այս ձևը ցույց է տալիս, որ նման պատվաստը ուժեղացնում է երիտասարդ հիբրիդի կենսունակությունը։ Այդպիսի պատվաստ Ի. Վ. Միչուրինը անվանեց որպես «մենտոր» (պատվանդան, դաստիարակող)։ Մենտորը շատ արժեքավոր զենք է մարդու ձեռքին բույսի ձևը կառուցելու համար և այժմ նա լայն ծավալով գործադրվում է ոչ միայն պտղաբուծության, այլև ուրիշ կուլտուրաների նկատմամբ՝ խաղողի և այլն։

Պտղաբուծության մեջ Ի. Վ. Միչուրինը գործադրում էր մի այլ ձև, որին նա անվանեց «նախնական վեգետատիվ մերձեցում»։ Այդ ձևի իմաստը կայանում է հետևյալում. եթե երկու բուսաբանական տեսակներ միմյանց հետ չեն խաչաձևվում, իսկ նրանցից հիբրիդային բույսեր ստանալը մեծ հետաքրքրություն է ներկայացնում պտղաբուծության համար, ապա այդ տեսակների մեկից, միամյա հիբրիդ սերմատունկից Ի. Վ. Միչուրինը վերցնում էր կտրոններ և նրանց պատվաստում մյուս տեսակի մեծահասակ

ծառի սաղարթի վրա։ Մի քանի տարիների ընթացքում պատվաստակալի սաղարթի տերևային մասսայի ազդեցության տակ պատվաստացուն փոխում է իր կառուցվածքը։ Պատվաստացուի մեջ այդ ժամանակամիջոցում տեղի են ունենում զգալի փոփոխություններ, բայց փոփոխություններ տեղի են ունենում նաև պատվաստակալի մեջ։ Այդ երկկողմանի փոփոխություններից հետո առաջանում է երկու տարբեր բուսական տեսակների մերձեցում, որը և հնարավորություն է տալիս նրանց խաչաձևվելու մեկը մյուսի հետ։

Այդ ձևը Ի. Վ. Միչուրինը կիրառում էր լայն չափերով տանձենիների ցրտակայուն տեսակներ ստանալու համար։ Ի. Վ. Միչուրինի խոշոր նվաճումների թվին է պատկանում այն, որ նա լուծեց կուլտուրական պտուղների սերմերից նոր սորտեր ստանալու խնդիրը։ Նա իր փորձերի հիման վրա ժխտեց այն կարծիքը, թե իբր կուլտուրական պտուղների սերմերից ստացվում են միայն վայրականներ։ Կուլտուրական պտուղների սերմերից Ի. Վ. Միչուրինը ստացել է տանձենու, խնձորենու և այլ կուլտուրաների տեսակներ։ Խնդիրը կայանում է միայն նրանում, թե ինչպիսի պայմաններում պետք է



դաստիարակել կուլտուրական պտուղների սերմատունկերը, որպեսզի նրանցից վայրականներ չառաջանան։

Երբ հեռավոր բուսաբանական տեսակները մեկ մյուսի հետ չէին խաչաձևվում, Ի. Վ. Միչուրինը գործադրում էր մի ուրիշ ձև, այսպես կոչված «միջնորդի» ձևը. այստեղ նա գործի մեջ էր դնում երրորդ տեսակը, կամ մի քանի տեսակներ, որոնք միաժամանակ խաչաձևվում էին երկու նախորդ տեսակների հետ։ Այս ձևով ստացված հիբրիդները հաջողությամբ խաչաձևվում են սկզբում վերցված երկու ցանկացած տեսակների հետ և տալիս հիբրիդներ։ Եթե բնութագրենք Ի. Վ. Միչուրինի կողմից ստացած սորտերը (նա տվել է 300-ից ավելի զանազան կուլտուրաների սորտեր), ապա պետք է ասենք, որ նրանք ցրտակայուն են, դիմացկուն՝ երաշտին, հիվանդություններին, բերքառատ են և վաղահաս, պտուղները լավորակ են և տեխնիկական վերամշակության համար օժտված են բարձր հատկություններով։

Ի. Վ. Միչուրինի ուսմունքը ձեռնարկ է հանդիսանում նաև հազարավոր առաջավոր կոլխոզնիկների համար, նա բացում է լայն հորիզոններ բնությունը վերափոխելու,

նոր բույսեր ստանալու, նոր արժեքներ արտադրելու համար։ Ինքը, Ի. Վ. Միչուրինը ասում էր. «Ներկայումս մեզ կարևոր է իմանալ, որ մենք կարող ենք միջամտել բնության գործողություններին։ Խելացիորեն միջամտելու հետևանքով, մենք այժմ հաջողությամբ կարող ենք արագացնել նոր տեսակների ձևառաջացումը և նրանց կառուցվածքը թեքել այն կողմը, որը ամենաօգտակարն է մարդու համար»։

Մեծ գիտնական Ի. Վ. Միչուրինի ուսմունքն այժմ դառել է միլիոնավոր մարդկանց սեփականությունը։ Նա ոգեշնչում է երկրի լավագույն մարդկանց, հանդիսանում է մարդկության բարեկեցության լավագույն պատվանդաններից մեկը, ցույց է տալիս ուղիներ բնության ուժերին տիրապետելու համար և վեր հանելու սոցիալիստական գյուղատնտեսությունը նորանոր բարձունքների։

ԳՐ. ԹՈՒՄԱՆՅԱՆ
Գյուղատնտեսական գիտությունների թեկնածու

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

«Հայաստանի Կոմունիստական (բոլշևիկների) պարտիայի 14-րդ համագումարի բանաձևը ՀԿ(բ)Պ Կենտկոմի աշխատանքի մասին ընկ. Գր. Հարությունյանի հաշվետու զեկուցման առթիվ»։ *Հայպետհրատ, 1948 թ., տիրաժ՝ 15.000, 30 էջ, գինը՝ 50 կոպ.։*

«Ագիտատորի գրադարան»-ի սերիայով լույս են տեսել

Մ. Ի. ԿԱԼԻՆԻՆ— «Քաղաքական ագիտացիայի մասին», *Հայպետհրատ, 1948 թ., տիրաժ՝ 10.000, 58 էջ, գինը՝ 1 ռ.։*

Դոցենտ Ի. ՅԱ. ԲԼԻՆՈՎ— «Ագիտատորի լեզվի մասին»։ *Հայպետհրատ, 1948 թ., տիրաժ՝ 10.000, 59 էջ, գինը 1 ռ.։*

Պատասխանատու խմբագիր՝
Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

ՎՖ 00045 Պատվեր № 113 Տիրաժ 8.500
Պոլիգրաֆ. և հրատ. վարչ. № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении
БЛОКНОТ АГИТАТОРА
№ 2 1949 г.

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

# ՇԱՐՈՒՆԱԿՎՈՒՄ Է
# „ԱԳԻՏԱՏՈՐԻ ԲԼՈԿՆՈՏ"-Ի
# 1949 ԹՎԻ
# ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆԸ

*Բաժանորդագրությունը ընդունվում է Սոյուզպեչատի և Փոստի բոլոր բաժանմունքներում, ինչպես նաև հիմնարկ-ձեռնարկություններում, ֆաբրիկա-գործարաններում, ուսումնական հիմնարկներում, սովխոզներում և կոլխոզներում, մամուլի հասարակական լիազորների մոտ։*

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐԸ՝

**Տարեկան 24 համար — 12 ռուբլի**
**6 ամիսը 12 „ — 6 „**
**3 ամիսը 6 „ — 3 „**
**Մեկ համարը — 50 կոպեկ**

**ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ**